**ՉԵԽԱԿԱՆ ՕԴԱՆԱւ ՄԸ** խորտակուեցաւ հիւսիսային Սլովաքիոյ լեռներուն մէջ: Քսանըրկու հոգի մեռան, չորս հոգի վիրաւորուեցան: — Անգլիական օդանաւ մը գիւղի մը վրայ իյնալով, գժոխքի վերածեց ամբողջ կեդրոնը :

**ԱՐԺԱՆԹԻՆԻ** փախստական նախագահը, Փերոն, գիրք մը հրատարակեց, — «Ուժը անասուններուն իրաւունքն է» խորագրով: Այս հատորին մէջ մասնաւորապէս կ'ամբաստանէ Ուրուկուէյը թէ ոչ միայն մերժեց ապաստան տալ իրեն, այլ եւ օգնեց Արժանթինի ըմբոստներուն, զինքը տապալելու համար: Յետոյ կ'ըսէ թէ ուխտած է վրէժ լուծել այդ երկրէն, երբ նորէն իշխանութեան գլուխ անցնի :

**Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ** նախագահը, Այզընհաուըր, ձայնասփիւռ ճառ մը խօսելով յայտարարեց թէ պիտի պաշտպանէ հանրապետական կուսակցութեան քաղաքականութիւնը, ինչ դեր ալ ունենայ: Մինչ անորոշ կը մնայ իր թեկնածութեան խնդիրը :

**ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ** փոխ-վարչապետը, Ուիլլի Շթոֆ, որ 41 տարեկան նախկին բանուոր մըն է, ազգ. պաշտպանութեան նախարար նշանակուեցաւ: Իր առաջին գործը պիտի ըլլայ կազմակերպել ազգային բանակը, համաձայն քանի մը օր առաջ տրուած որոշման: Այս բանակը պիտի կապուի Վարշաւայի դաշինքին, իբրեւ լրացուցիչ մասը արեւելեան ճակատին: Արդէն իսկ կազմ եւ պատրաստ են 110.000 զինուորներ, որոնք նախապէս հաւաքուած էին իբրեւ «ժողովրդական ոստիկանութիւն»: Նոր բանակը պիտի սպառազինուի ամէնէն արդիական զէնքերով :

**ՏԻԿԻՆ ՌԸՆՕ**, համանուն հաստատութեան տնօրէնին այրին, դատ բացաւ անծանօթ անձի մը կամ անձերու դէմ, այն ամբաստանութեամբ թէ բանտին մէջ խոշտանգելով սպաննած են իր ամուսինը, Լուի Ռընօ, պատերազմի ընթացքին: Ռընօ ձերբակալուելով Ֆրէնի բանտը փոխադրուած էր 1944 Սեպտեմբերին, իբրեւ գործակից Գերմանիոյ: Փաստաբանը, Իզորնի կ'ըսէ թէ բանտարկեալը խոշտանգուած էր իր խցիկին մէջ Հոկտ. 3-4ի գիշերը, եւ հիւանդանոց մը փոխադրուելով մեռաւ Հոկտ. 24ին: (Ռընոյի հաստատութիւնը պետական սեփականութիւն է այժմ):

**250 ՔԻԼՕ ՁՈՅԼ ՈՍԿԻՆ**, որ կ'արժէ 280.000 տոլար, գողցուած է ոչ թէ Փարիզի, այլ Ժընեւի փողոցներուն մէջ: Կառապանը ոսկին օդանաւէն առած էր 25 տուփերով եւ իր կառքին մէջ դնելէ վերջ սրճարան մը քաշուած էր: Գողերը չեն բռնուած տակաւին :

**ԱՄԵՐԻԿԵԱՆ** տորմիղին ելմտացոյցին մէջ 1400 միլիոն տոլարի վարկ մը կը նախատեսուի, նոր մարտանաւերու շինութեան համար: Մասնաւորապէս պիտի շինուի յածանաւ մը՝ 11.000 թոն տարողութեամբ, ինչպէս եւ վեց նոր սուզանաւեր: Բոլորն ալ պիտի բանին հիւլէական ուժով :

**ՀԱՋԻՒ ԵՕԹԸ ԺԱՄ** պիտի տեւէ յառաջիկայ պատերազմը, ինչպէս յայտարարեց Քանատայի օդնուային ուժերու հրամանատարը: «Այդքանը կը բաւէ բոլորովին ոչնչացնելու համար կեանքի մէն հետք երկրի մը մէջ, քանի մը ջրածին ռումբերով»:

**ԹՈՒՐՔԻԱ** նոր բողոքագիր մը ուղղեց Եուկոսլաւիոյ, գանգատելով թէ մառեշալ Թիթօ քննադատած է Պաղտատի դաշինքը: Ինչպէս կը յիշուի, Պելկրատի անգլիական դեսպանը յայտնած էր առաջին բողոքը, քանի որ Անգլիան ալ անդամ է նոյն ուխտին :

**ԱԼԺԵՐԻՈՅ** Թլեմսեն քաղաքը ահուսարսափի մատնուած է երեք օրէ ի վեր: Ամէն գործ դադրած է: Կը վախցուի ոտով ծաղի: Բնիկները չափազանց գրգռուած են :

Հազ չէ մնացած քաղաքին մէջ: 8000 բնիկները թշնամական ցոյց մը կատարեցին, Արաբի մը յուղարկաւորութեան առթիւ: Կիներն ալ կը մասնակցէին ցոյցին, վրէժ պահանջելով :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Մասնագէտ գործաւոր փլոմպիէ մը եւ երկու աշկերտներ, նոյն գործին մէջ աշխատելու համար: Հեռուէն եկող մասնագէտ գործաւորին համար բնակարանը ապահովուած է: Դիմել ԹԱԹՈՒԼԵԱՆԻ՝
14, Rue Julien Lacroix, Paris (20e).

Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)

## ՀԱՅ — ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Լոյս կը տեսնէ 1934էն ի վեր: Բժշկական, պատմական, գրական, լեզուական ուսումնասիրութիւններով ու պրպտումներով՝ միշտ հետաքրքրական: Առողջապահական, գործնական ծանօթութիւններով ու նորութիւններով՝ միշտ օգտակար:

Ամէն մէկ բաժանորդ եթէ մէկ բաժանորդ բերէ, լաւագոյն վարձատրութիւնը կ'ըլլայ խմբագրին :

Տարեկան բաժնեգինը 1000 Փրանք: Արտասահման 1200 Փրանք:

Հասցէ. — Շ. Նարդունի,
32, Rue de Trévise, Paris (9)

Պ. Ժօզէֆ Գարաղաշեան, Տէր եւ Տիկ. Սանկիկեան եւ զաւակները, ցաւով կը ծանուցանեն իրենց մեծ մօր

ԹՈՒՐՖԱՆՏԱ ԳԱՐԱԳԱՇԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ իր բնակարանը: 11պիս, ռիւ տիւ Շըմէն – Վէռ, Քլամառ:

Թաղումը պիտի կատարուի երկուշաբթի ժամը 1.30ին:

Հաւաքուիլ իր բնակարանը, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Քլամառի գերեզմանատունը :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Պուլ. Օտտոյի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Կարապետեանի եւ բոլոր ընտանեկան պարագաներուն իրենց ողբացեալ զաւկին եւ ազգականին Սեդրակ Տէր Կարապետեանի մահուան առթիւ: Նաեւ ցաւակցութիւն Այրի Տիկին Ալթուն Վարդանեանի եւ բոլոր պարագաներուն, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ ազգականին Տիգրան Վարդանեանի մահուան առթիւ :



## Հ. Մ. Ը. Մ.Ի

### ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը տեղի կ'ունենայ 28 Յունուարին, շաբաթ իրիկուն, քաղաքապետութեան ընդարձակ սրահներուն մէջ: Առաջնակարգ նուագախումբ :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի ժամը 21ին, Քասէի սրճարանին վերնայարկը: Կը խօսի Պ. ՄԻՔԱՅԷԼ ՄԵԼԻՔ–ՆՈՒՊԱՐԵԱՆ: Նիւթ՝ Զինաստանի եւ Ճաբոնի հայութեան կեանքը 1916էն 1955:

Մուտքը ազատ է :



### ՅԱԿՈԲ ՆՇԱՆԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ողբացեալ Յակոբ Նշանեանի մահուան առթիւ Տէր եւ Տիկին Ղազարեան (Ժուան Լէ Փէն) երկու հազար Ֆր. կը նուիրեն Ֆ. Կ. Խաչի կայանին:

Ստանալ «Յառաջ»էն :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ վարժարանի թատերահանդէսը Վարդանանցի առթիւ, Փետրուար 26ին :

## Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

### ՎԵՐԱԴԱՐՁ

Նուիրուած է 1915ի քառասնամեակին: Ընդարձակ Պոէմա մը, ուր ինքնատիպ ձեւով մը տրուած է մեր ազգային ահաւոր տռամը :

Կարելի է գտնել բոլոր հայ գրավաճառներու մօտ: Գին՝ 500 փրանք: Ընտիր տպագրութիւն, 150 էջ: Հեղինակին հասցէն՝ G. POLADIAN,
53, Chemin de St. Julien
Marseille (B. du R.) France

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Մարաշի Խարունիս գիւղէն Քոճա Եաղուպեան ընտանիքի անդամները, որոնց հետքը կորսուած է գաղթականութեան ատեն: Կը լսուի թէ Ֆրանսա գտնուած են: Կը փնտռուի նաեւ Յարութիւն Պարսամեան որ Յունաստան գաղթած էր :

Կը խնդրուի տեղեկացնել իրենց քրոջ՝ Տիկին Կատարինէ Պարսամեանի 32 ռիւ տը Թրանս, Տրակինեան (Վար), Ֆրանս:

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել :

× Սեբաստիոյ Շէհիթլեր Մահալլէսի թաղէն եւ Արամեան վարժարանի աշակերտներէն Մարտիրոս Տէրտէրեան կը փնտռէ իր ծնողքը, հայրը՝ Սարգիս, մայրը՝ Աննա, եղբայրը Արսէն, որոնցմէ բաժնուած է 1915ին Սուրուճի մէջ :

Տեղեկացնել՝
Ets. Derderian, 11, Bld. J. Jaurès
Draguignan (Var), France.

